

ՎԻՔԻՊԵԴԻԱ
Ազատ հանրագիտարան

# ԲԴՍՄ

**ԲԴՍՄ** (անգլ.՝ BDSM), սեռահոգեբանական շարժում, հիմնված իշխանության էրոտիկական փոխանցման կամ այլ սեքսուալ հարաբերությունների վրա, որը ընդգրկում է դերային խաղերը։ Դերային խաղերը իրենց հերթին, ներկայացնում են խաղեր, որոնց ընթացքում մասնակիցները ընտրում են իշխանական կամ վասալական կեցվածք։

BDSM



| Ձևերը | |
|---|---|
| **B&D, B/D, կամ BD (Գ/Պ)** | Գերում և Պատժում |
| **D&s, D/s, կամ Ds (Ի/Հ)** | Իշխում և հնազանդություն |
| **S&M, S/M, կամ SM (Ս/Մ)** | Սադիզմ և մազոխիզմ |
| **Դերերը** | |
| **Top/Dominant/Daddy/Big** | ակտը ղեկավարող զուգընկեր |
| **Bottom/Submissive/Little/Pet** | ղեկավարվող զուգընկեր |
| **Դերափոխում** | դերերով փոխվելը |

ԲԴՍՄ-ի ֆիզիոլոգիական հիմք է հանդիսանում մարդու սեռական գրգռվածության բարձրացումը և հոգեֆիզիոլոգիական հաճույքը, որը մասնակիցը ստանում է նախօրոք որոշված, չթույլատրելի որևէ արաքի արդյունքում, դրա հետ համատեղ, ոչ միշտ, բայց հաճախ, նաև որոշ ֆիզիկական ներգործությունից։ Դրա հետ համատեղ ԲԴՍՄ-ն կարող է լինել ինչպես միայնակ սեռական պրակտիկայի արդյունք, այնպես էլ սեքսուալ հարաբերությունների անբաժան մաս կազմի։

ԲԴՍՄ-ն տարբերվում է սովիալ ագռեսիվ կամ հանցավոր արարքներից նրանով, որ առաջնապես դրանում տեղ է զբաղեցնում ներգրավված մասնակիցների կողմից SSC (հապավում անգլերեն բառերից *safe*, *sane*, *consensual*) շրջանակների պահպանումը։ Անբաժանելի մաս է կազմում նաև անվտանգության, գիտակցության և ինքնակամության պահպանումը։




ԲԴՍՄ հապավման նշանակությունը. գերում և պատժում; իշխում և հնազանդություն; սադիզմ և մազոխիզմ

ԲԴՍՄ ակտիվությունը ենթադրում է բարոյական և ֆիզիկական ազդեցություններ, որպեսզի այն որպես ինքնակամ երևույթ տարբերվի մարդուն բռնորոշ անհարմարավետության և ցավի զգացմունքից, և տարբերվի ԲԴՍՄ-ն կանգնեցնելու գիտակցաբար երևույթից, օգտագործվում է ստոպ-բառ (ժեստ կամ էլ շարժում), որը նշանակում է ԲԴՍՄ-ի և կապակցված բոլոր գերծողությունների անհապաղ դադարեցում։ Որոշ զույգեր օգտագործում են ավելի բարդ ժեստերի համակարգ, որը «ոչ դոմինանտ» մասնակցին թույլ է տալիս հասկացնել դոմինանտին, թե որն է թույլատրելի սահմանը։

## ԲԴՍՄ համայնք

Շարժումը բաղկացած է բազում ճյուղերից, որոնք հիմնված են առանձին մասնակիցների նախասիրությունների վրա, դիսցիպլինա և սփանքինգ, ամրակցում և կապում (bondage), իշխանություն և ենթարկում (DS, Dominance & Submission), անժամկետ հիերարխիական պատկանելություն (LS, lifestyle) և այլն։ Այս ուղղությունները կարող են համատեղվել կամ էլ լինել առանձին։

ԲԴՍՄ սեռական ուղղվածությամբ ընդունված է մասնակիցներին բաժանել ենթարկողների (top, վերևին) և ենթարկվողների (bottom, ներքևին), ինչպես նաև այնպիսինների, որոնք համատեղում են (switch - սուիչ)։ Սովորական հարաբերությունները, որոնք չունեն այս տարրերը, ընդունված է անվանել «վանիլային» (ի նմանություն պաղպաղակի համի, ԱՄՆ-ում սովորական պաղպաղակ է համարվում վանիլայինը)։

Համաձայն հարցումների[1][2] արվել է հետևյալ բացահայտումը, որ

- Դոմինանտի դեր են նախընտրում
  - 71% տղամարդիկ հետերոսեքսուալ ուղղվածությամբ
  - 11% կանայք հետերոսեքսուալ ուղղվածությամբ
  - 12% տղամարդիկ հոմոսեքսուալ ուղղվածությամբ
- Ենթարկվողի դեր են կատարում
  - 29% տղամարդիկ հետերոսեքսուալ ուղղվածությամբ
  - 89% կանայք հետերոսեքսուալ ուղղվածությամբ
  - 88% տղամարդիկ հոմոսեքսուալ ուղղվածությամբ

## ԲԴՍՄ մարմնավաճառություն


Հնազանդվող կինը կապված պատից։

ԲԴՍ մարմնավաճառությունը մարմնավաճառության առանձնահատուկ տեսակ է, որը ենթադրում է բացի սեքսուալ բնույթի գործողություններից, նաև ԲԴՍՄ ոլորտի ֆիզիկական գործողություններ։ Երբեմն սեռական հարաբերությունը ամբողջովին բացակայում է։ ԲԴՍՄ մարմնավաճառությունը տարածված ինչպես հետերոսեքսուալ այնպես էլ հոմոսեքսուալ տեսակներում։ Նմանօրինակ ծառայություններ մատուցում են ինչպես դոմինանտ, այնպես էլ ոչ դոմիմանանտ մասնակիցներ։ Նրանցից շատերը չեն բնորոշում իրենց արաքները իբրև մարմնավաճառություն, և փորձում են խուսափել այդ եզրույթից օգտագործելով «Վարձու տիրուհի (տիրակալ)» կամ նմանօրինակ այլ եզրույթներ։ ԲԴՍՄ համայնքի ներսում վճարովի ծառայություններին վերաբերվում ինչպես կոռեկտ, այնպես էլ նողկանքով։

## ԲԴՍՄ-ի նշանը


ԲԴՍՄ տարբերանշան

ԲԴՍՄ նշան ունենալու հարցը քննարկվում էր համացանցում դեռ 1990-ականներից։ 1995 թ.-ի նշանը ստեղծվեց Սթիվ Քվագրյումի (Steve Quagmyr) կողմից։ Նշանի հիմք է հանդիսանում տրիսկելիոնը, ինչպես նաև նշանը ունի նմանություն դաոսյան Ին և Յան նշանի հետ։

Այս նշանը ընդունվեց ողջ ԲԴՍՄ համայնքի կողմից ողջ աշխարհում։ Երեք բաղադրյալների ներկայությունը կարող է ընդունվել որպես ԲԴՍՄ-ի երեք հիմնական ուղղվածությունների՝ BD, DS и SM, հայանապատկեր։ Ինչպես նաև որպես ԲԴՍՄ-ի երեք հիմնական հիմքերի՝ անվտանգություն, գիտակցություն, ինքնակամություն։ Թեք կորերը կարող են ընդունվել որպես մտրակների շարժում, իսկ կլոր մասը՝ ողջ ԲԴՍՄ-ի ինքնաբավություն և պաշտպանվածություն։ Գույները կարող են տարբեր լինել, սակայն կլորը և բաժանող կորերը հիմնականում տետաղյա գույնի են։ Հարկ է նշել, որ նշանի ընդունումը, որպես այնպիսին, ինչպիսին ստեղծել է հեղինակը ԲԴՍՄ համայնքում պարտադիր չէ, սակայն այդ տարբերակը ամենատարածվածն է։ Փոխելով կամ ձևափոխելով որևէ տարր կարելի է ստանալ լրիվ այլ պատկեր, այլ ընթատեքստով[3]։

Այս նշանը լայնորեն կիրառվում է թեմատիկ զարդեր, իրեր, կայքեր և ԲԴՍՄ պլակատներ պատրաստելուց։ Կան նաև այլ տարբերանշաններ, սակայն դրանք լայն կիրառում չունեն։

## Ծանոթագրություններ


1. Ernulf K. E., Innala S. M. Sexual bondage: a review and unobtrusive investigation // Arch. Sex. Behav. 1995. Vol. 24. N 6. P.631—654.
2. Дерягин Г. Б. Криминальная сексология. Курс лекций для юридических факультетов. М., 2008. С. 165. ISBN 978-5-93004-274-0.
3. «Какие эмблемы не являются символом БДСМ-сообщества» (https://web.archive.org/web/20100109115134/http://bd-sm.su/not_bdsm_emblem.htm). Արխիվացված է օրիգինալից (http://bd-sm.su/not_bdsm_emblem.htm) 2010 թ. հունվարի 9-ին. Վերցված է 2013 թ. հունիսի 27-ին.


## Արտաքին հղումներ

- «Բիդի էսե՛մ, բիդի էսե՛մ... Տո ի՞նչ բիդի էսես»:) (https://bravo.am/news/_Բիդի_էսե_մ__բիդի_էսե_մ__Տո_ի_նչ_բիդի_էսես_____83322)

 Վիքիպահեստն ունի նյութեր, որոնք վերաբերում են «ԲԴՍՄ» հոդվածին։

| Չափորոշչային վերահսկողություն | BNF: 166577340 (https://catalogue.bnf.fr/ark:/12148/cb166577340) |
|---|---|